Իփէկեան, Գ. (1913) Քաւոր. Ազգագրական հանդէս, 24 (1). pp. 90-110.

# ՔԱՒՈՐ

Գ. Իփէկեանի.

*Քաւոր**), *կնքահայր, խաչեղբայր. ահա այս երեք անուանումներով են յատկանշւում մի իրաւական հիմնարկութիւն, որ այնքան կարեւոր դեր է կատարում հայ ամուսնական ծէսերի և սովորութիւնների մէջ։*

*Ըստ ամուսնական եկեղեցական օրէնքի, քաւորի ներկայութիւնը բացարձակ անհրաժեշտ է պսակի արարողութեան ժամանակ։ Նրա պաշտօնը կայանում է, ներկայումս՝ ամուսնացողների վրայ խաչ բռնելու մէջ։ Այդ խաչը, սակայն, չէ կազմում նրա պաշտօնի մի էական մասը. քանի որ նա պարզապէս փոխարինում է սուրը և պատեանը, որոնք մի ժամանակ գործածուել են այդ միեւնոյն նպատակով, և նոյն իսկ մի քանի տասնեակ տարիներ առաջ եղել են միակ սիմվօլը նրա պաշտօնին, զանազան կենդրոններում* **)։

*Քննելով զուտ կրօնական տեսակէտից մենք ոչինչ չենք ունենայ աւելացնելու այդ անձնաւորութեան և նրա կատարած դերի մասին, քանի որ նա պարզապէս և միայն ներկայանում է եկեղեցական ծէսերի մէջ իբրև պաշտօնական վկայ, առանց որի ներկայութեան անկարելի է կատարել պսակը։*

*Այս դերը ինքնըստինքեան թէև կարեւոր, բայց և այնպէս շատ դժգոյն է, եթէ երբէք սովորութիւնները չըգան ցոյց տալու մեզ, թէ որքան էական, որքան այլազան նշանակութիւն ունի քաւորը, ոչ միայն իբրև արարողութիւնների ժամանակ անհրաժեշտ մի անձնաւորութիւն, այլ հայ ամուսնացեալների ապագայ կեանքին մէջ, և նրանց երեխաների նկատմամբ։ Այդ սովորութիւնները հանդէս են բերում Քաւորին, մի այնպիսի խորհրդաւոր, միսթիկ գոյնով, որ նա ներկայանում է ոչ միայն ամուսնացեալ զոյգերի համար, այլ ընդհանուր կերպով հայ ընտանի-*

---

*) *Այս յօդուածը մի հատուած է այն ընդարձակ հետազօտութեան, որ կազմել է պ. յօդուածագրի գիտահետազօտութեան և որը կարդաց Ազգագրական ընկերութեան հրապարակային նիստում։* ԽՄԲ.

**) *Կարդալ Անահիտի* 1911—12 *համարների մէջ Ակնայ ամուսնութիւնը։*

քի համար մի տեսակ կրօնական պաշտպան։ Մենք տեսնում ենք որ այդ սովորութիւնները վերագրում են նրան մի արտասովոր անտեսանելի ույժ, շնորհիւ որի նա կարողանում է բոլոր աներեւոյթ չարիքների դէմ պաշտպանել նորակազմ ընտանիքը, ապահովել նրա գոյութիւնը, բարգաւաճումը։

Քննենք այժմ, և վերլուծենք այն բոլոր առանձնայատկութիւնները, որոնք յատկանշում են Քաւորին, և այդ քննութիւնն այնքան յստակ կերպով կը պարզի մեզ նրա էութիւնը, որ հասկանալի և տրամաբանական ձևով մենք կարող կը լինենք հասնել որոշ եզրակացութեան։

1. Քաւորը սովորաբար շարունակական է մի ընտանիքի մէջ. մենք չենք ուզում գործածել ժառանգական բացատրութիւնը. որ շատ աւելի լայն է քան ինչ որ ներկայիս ներկայացնում է քաւորի մշտականութիւնը։ Մենք՝ գիւղերում կարող ենք հանդիպել այն տեսակ ընտանիքների, որոնք շարունակաբար հայթհայթել են քաւորներ՝ որոշ գերդաստանի։ Նոյն իսկ կան վայրեր՝ որտեղ մատնացոյց են անում երկու հարիւր տարուայ քաւորական յաջորդութիւն։ Այս հանգամանքը շատ նշանակելի է, երբ աչքի առաջ ունենանք այն պարագան, որ կրօնական զանազան պաշտօնները եղել են ժառանգական։ Եւ այդ ոչ միայն կարելի է ասել կրօնական պաշտօնների, այլ նաև արհեստների համար։ Մեր նպատակը չէ բացատրել այստեղ այդ երևոյթի պատճառները, միայն մենք բաւականանում ենք ընդգծելով այն յաջորդականութեան սովորութիւնը, որ դեռ պահպանւում է հայ գիւղերում։ Քաղաքներում, և մասնաւորապէս մեծ կենդրոններում այդ սովորութիւնը մոռացումի մատնուած է արդէն, բայց նոյն իսկ այնտեղ, երբ մի ընտանիք ցանկանում է կնքել իր նորածին երեխան, նա պարտաւոր է նախ դիմել պսակի կնքահօր, և նրա մերժելուց յետոյ միայն ընտրել մի նոր կնքահայր։

2. Նա մասնակցում է խօսք կապին, նշանադրէքին և ամուսնութիւնից առաջ և հարսանիքի նախորդող բոլոր հանդէսներին. նա միշտ առաջին և ամենայարգուած անձնաւորութիւնն է, բոլոր ծիսակատարութիւնների ժամանակ։ Նա է ստանում առաջին հրաւէրը, և ոչ թէ որև է պարզ հրաւիրակի կողմից, այլ ուղղակի փեսայի հայրն է գնում անձամբ և նուէրներով յայտարարելու հարսանիքի օրը և խնդրելու որ շնորհ բերի։

Նա է որ գլխաւոր դերը կատարում է փեսային ածելելու կամ բաղնիք տանելու ժամանակ. և յաճախ ածելելու գործողութիւնը սկսում են քաւորից։

3. Եկեղեցում պսակի ժամանակ Քաւորը կապում է սուրը.

և նախ քան խաչի գործածութիւնը, նա այդ սուրը և պատեանը խաչաձև բռնում է ամուսնացողների գլխին վերև։ Այդ սուրը, որի հովանաւորութեան տակ կատարւում է պսակի արարողութիւնը, մի կախարդական ոյժ ունի քաւորի ձեռքում։ Նա ծառայում է չեզոքացնելու կամ վանելու բոլոր չար ոգիներին։

Իւրաքանչիւր անգամ որ փեսայ և հարսը անցնելու են որևէ շեմքի վրայից, Քաւորը պէտք է կանխաւ մխի իր սուրը դրան, և այդպիսով հալածէ բոլոր չար ոգիներն, որոնք կարող են վնասել նորապսակներին։

Երբ քահանան վեր է առնում նարօտը պսակից մէկ երկու օր յետոյ, քաւորն էլի պարտաւոր է իր սուրով հովանաւորել այդ արարողութիւնը։

Այստեղ անցողաբար արժէ շեշտել այն կէտը, թէ ինչպիսի մեծ նշանակութիւն են ստանում չար ոգիներն ամուսնութեան ժամանակ։ Այդ հասկանալու համար էական է յիշել թէ որպիսի կարևորութիւն ունի ամուսնութիւնը, ոչ միայն մի նոր ընտանիքի կազմուելու տեսակէտից, որ ընկերական մեծ նշանակութիւն ունի, այլ կրօնական տեսակէտից։ Օճախի պաշտամունքը բացատրում է յստակ կերպով թէ ինչու մասնաւորաբար պէտք է պաշտպանել նորապսակներին, չար ոգիների դէմ․ Նրանց ամլութեան դատապարտուելը մի ամբողջ օճախի ոչնչացում կը նշանակէ, և ոչ միայն նրանք կըզրկուեն ապագայում, վայելելու իրանց յաջորդների կողմից իրանց հոգու համար էական պաշտամունքը, այլ նրանց նախահայրերը կը զրկուեն այն բոլոր պաշտամունքներից, որոնք պէտք է մատուցուեն նրանց հոգիների համար։ Ամուսնութիւնը յուերժացնում է ոչ միայն կենդանիներին, այլև մեռեալներին, և այդ ակտը հետաքրքրում է ոչ թէ միայն նրանց, որոնք անմիջապէս շահագրգռուած են, այլև այդ գերդաստանի անցեալ ու ապագայ սերունդներին, և նոյնիսկ որոշ համայնքի բոլոր անդամներին։ Ընդգծելով այս պարագան՝ մենք վեր հանած կըլինենք թէ ինկապէս որքան մեծ է Քաւորի դերը, և նրա նշանակութիւնը։

Այս մի քանի սովորութիւնները, կարծում ենք, յստակօրէն պարզում են այն միսթիկ և կախարդական նշանակութիւնը, որ տրուած է Քաւորին, վեր են հանում նրա կրօնական բնոյթը, և շեշտում են այն պարագան, որ հեթանոսական հաւատալիքների հետ մեծ կապ ունի նրա կատարած դերը։

Բայց այստեղ չէ վերջանում նրա դերը։ Ընդհակառակը Քաւորը շատ աւելի սերտ, շատ աւելի էնտիմ կերպով կապուած է նորապսակների հետ։ Նրա յարաբերութիւնները գնում են շատ հեռուները։ Եւ այդ յարաբերութիւնները գալիս են աւելի ուժեղ

կերպով շեշտելու վերոգրեալ առանձնայատկութիւնները։ Մենք այժմ կսկսենք թուել տարբեր սովորութիւններ, որոնք նոյնպէս կապուած են Թաւուրի անհատականութեան հետ։

4. Երբ հարսը հագուեցնում են, Թաւուրը հրաւիրւում է կապելու նրա գօտին։ Նա նախ քան կապելը երեք անգամ հարսի գլխի վերևից վայր է գցում այդ գօտին, և անում է իր մաղթանքը. «Աստուած քեզ մի ղօչ տայ»։ Սկզբում այդ պաշտօնը կատարում է փեսի փոքր եղբայրը և երեք անգամ կրկնում է «Եօթն ինձ նման, մին քեզ նման»*). սակայն նոյնիսկ այնտեղ մի ժամանակ քաւորն է եղել կատարելիս այդ գօտեկապութեան արարողութիւնը։

Մենք անցողաբար յիշեցնում ենք այստեղ թէ կանացի գօտին համարուել է նրա սեռական սիմպօլը։ Պէտք չէ մոռանանք այս պարագան, որովհետև նա մեզ կըծառայի լուսաբանելու այս և նման յետագայ սովորութիւններ։

5. Որոշ տեղեր (օրինակ Վարանդա և Կէօքչայ) նա մասնաւորաբար հսկում է կամ միջոցներ է հայթհայթում կուսութեան ապացուցման համար։ Վարանդայում նա սպասում է տանիքի վերև որպէսզի իրան բերեն արիւնաներկ թաշկինակը։ Իսկ Կէօքչայում ինքն է նուիրում մի մետաքս թաշկինակ, որը գործածւում է մասնաւորաբար նորապսակների անկողնի մէջ, կրելու համար կուսութեան հետքերը և ցուցադրելու համար շահագրգըռուող կողմերի առաջ։

6. Արարատեան դաշտի գիւղերում, երբ նորապսակ կինը զաւակ չէ ունենում, քաւորը տանում է նրան ս. Գրիգորի աղբիւրի մօտ (Արարատի վրայ) և քանդում է նրա գօտին արտասանելով որոշ ֆօրմուլաներ։

7. Երբ Սանամայրը բռնւում է երկունքի ցաւերից և ուշաթափւում, իսկոյն կանչւում է Թաւուրը, որ ապտակում է նրան որպէսզի չար ոգիներին փախցնի։ Նոյնպէս երբ շատ տաժանելի են լինում տղաբերքի ցաւերը, Թաւուրի գլխարկը դնում են հիւանդի գլխին, որպէսզի երեխան հեշտ ծնուի։

8. Շատ տեղեր հարսը, ամուսնութեան գիշերը, պէտք է գըռնայ և անձամբ հանուեցնի քաւորին նախ քան նրա անկողին մտնելը։

9. Երբ նորածին երեխայի բերանը ջրոտում է, կանչում են

---

*) Հետաքրքիր է բաղդատել այդ մաղթանքը ժողովրդական երգի հետ «Եար ունիմ, եար ունիմ, եարս եօթն տղբէր ունի», ինչպէս նաև զանազան հեքեաթների հետ։

քաւորին որ իր բթամատը սեղմէ նրա շրթների վրայ և դադարեցնէ շողիկները։

10. Երեխայի կնունքից յետոյ, մայրը՝ քաւորի ձեռքերիցստանում է նրան. նախ համբուրելով կնքահօր ոտներն ու ձեռքերը։

11. Մասնաւորաբար շահեկան են այս բոլորից յետոյ այն յարաբերութիւնները, որ կան Սանամօր և Քաւորի մէջ։ Սանամայրը ամբողջ կեանքի ընթացքում չպէտք է խօսի Քաւորի հետ և որոշ վայրերում չպէտք է անցնի նրա դռան առաջով։ Իսկ եկեղեցին իր կողմից բացարձակ արգելում է որև է ամուսնութիւն, քաւորի և սանամօր միջև ստեղծելով մի ազգակցութիւն, որը հաւասար է առաջին կամ երկրորդ աստիճանի ազգակցութեան։

Այս վերջին սովորութիւնը արժանի է որոշ ուշադրութեան։ Նրանց յարաբերութիւնների մէջ կայ յարգանքից աւել մի բան։ Սովորոյթը բաժանում է նրանց ամենախիստ կերպով։ Մէկի հետ մունջ պահելու և երեսը ծածկելու երևոյթներն, որոշ գիտնականների կողմից բացատրւում են իբրև անցեալում գոյութիւն ունեցած սեռական յարաբերութիւնների հետքեր։ Այդ բացատրութիւնը եթէ տրուի առանց ընդհանրացումի, և հաշուի առնուի թէ կարող են որոշ դէպքերում նրանք բացատրուել և այլ ձևով, կարելի է համաձայնուել այդ գիտնականների հետ։ Ներկայ դէպքում, որտեղ մասնաւորաբար շեշտւում է այն՝ որ յարգանքը միայն չէր կարող ստեղծել այսպիսի մի խստապահանջ վերաբերում Քաւորի և Սանամօր մէջ, մենք կարող ենք ընդունել ամօթի և մանաւանդ սեռական ամօթի բացատրութիւնը ներկայ սովորութեան իբրև սկզբնական հիմք։—

Մենք տեսնում ենք որ այս բոլոր սովորութիւնների մէջ մասնաւորաբար շեշտուած է Քաւորի կրօնա-կախարդական բնոյթը, ինչպէս նաև (սկսած Դ. սովորութիւնից) որոշ սեռական կապեր Սանամօր և Քաւորի մէջ, որ կարելի է բացատրել իբրև մնացորդներ անցեալի աւելի սերտ առնչութիւնների։

Այստեղ մեզ ներկայանում են մի շարք հարցեր։— Մենք պարտաւոր ենք նախ լուսաբանել, թէ կարող էին սեռական յարաբերութիւնները և կրօնական գաղափարները հաշտուել իրար հետ, հայկական անցեալ իրականութեան մէջ։ Յետոյ մենք պարտաւոր ենք լուսաբանել կարելի եղած չափով, թէ ինչպէս էր անցեալում ամուսնութիւնը ըմբռնւում և որոնք էին այն արարողութիւններն, այն ձևակերպութիւններն, որոնցմով ամուսնութիւնն էր կնքւում։ Այս հարցերի լուսաբանութիւնը կարող է աքանչելի կերպով ծառայել մեզ իբրև ուղղեցոյց մեր եզրակա-

ցուԹիւնների համար։ Եթէ երբէք այս հարցերի լուծումը համապատասխան լինի մեր դիտել տուած գլխաւոր սովորուԹիւնների ոգիին, մենք այդ դէպքում կարող կը լինենք բացատրել Բաւորի խնկական դերը, և լոյս սփռել նրա անհատականուԹեան վերայ։—

Քննենք վերոգրեալ հարցերը։—

Ցայտնի է բոլոր նրանց, որոնք հետաքրքրուել են նախնական կրօնքներով՝ Թէ ինչ մեծ դեր են կատարում այդ կրօնքների մէջ սեռական հարցերը։ Նախնական մտքի համար, ծնունդը ներկայցել է իբրև մի այնպիսի հրաշալի, անբացատրելի երևոյԹ, որի առաջ անկարելի էր որ չը խոնարհուէր մանուկ մարդկուԹիւնը և այդ անբացատրելին չաստուածացնէր նրա արտաքին արտայայտուԹիւնների միջոցով։ Մենք ակնարկում ենք Ֆալլուսի պաշտամունքին, որ իր գոյուԹիւնը պահել էր նոյնիսկ Հռովմի քաղաքակրԹեալ շրջանում։

Որոշ ուսումնասիրուԹիւններ կատարուել են այդ ուղղուԹիւնով հայ կրօնների համար, և յարգելի պ. Ե. Լալայեանցը, մի անտիպ աշխատուԹեան մէջ հասնում է այն եզրակացուԹեան, Թէ հայերի մէջ Ֆալլուսի պաշտամունքը գոյուԹիւն ունեցել է նոյնպէս։

Հայ պատմագրերի մէջ կան որոշ ակնարկուԹիւններ հեԹանոսական կրօնի մասին, մենք վերցնում ենք ամենայատկանըշականը Փաւստոս Բիւզանդից. «Եւ զԴիցն Նուիրեան պաշտամունս ի նմանութիւն պոռնկութեան գործոյն ընդ խաւար կատարէին».—այստեղ հայ պատմագիրը, որ մասնաւորապէս ուշադրուԹիւն է դարձրած բարքերին և սովորուԹիւններին, յիշում է մի պաշտամունք որ գիշեր ժամանակ մուԹի մէջ կատարուելիս է եղել. «ի նմանութիւն պոռնկութեան»։

Գարոն Մեղաւորեան, հայ ամուսնուԹեան նուիրած իր աւարտական աշխատուԹեան մէջ (էջ 48) խօսում է Գերմանացի մի ճանապարհորդի յիշած կրօնքի մասին, որն յիշեալ օտարականը գտել է Քուրդիստանի լեռներում. այդ կրօնքը, որը նա անուանում է «Լոյսերի հանգուցման կրօնք», շատ նման է Փաւստոսի ակնարկածին։ Ներկայումս էլ զանազան լեռնաբնակ ցեղեր Քիւրդիստանում (Դերսիմի շրջանում), ինչպէս նաև «Գըզըլ-Բաշ» կոչուած աղանդաւորները, կատարում են այդ խառնակեցական պաշտամունքը։ Այդ քուրտ ցեղերի մէջ այդ պաշտամունքն ունի նաև մի տարբեր ձև, մի վարեանդ, որի համաձայն արարողուԹիւնը սկսում է առանձնամի առաջ երկրպագելով և համբուրելով։ Այդ ցեղերի մէջ կան այնպիսիներ, որոնք պահած են դեռ իրանց նախկին հայուԹեան յիշատակը, և ոմանք

պատիւ են համարում յայտարարելու, որ իրանք սերած են Մամիկոնեան նախարարութիւնից։

Բայց թողնենք այս բոլորը, և վերցնենք մի այլ պատմական փաստ։ Ստրաբոնը յիշատակում է իր ծանօթ աշխարհագրութեան մէջ, հայկական սովորութիւններ, կապուած Անահիտի պաշտամունքին հետ։—Ըստ այդ հեղինակին՝ հայերի մէջ գոյութիւն է ունեցել կրօնական պոռնկութիւնը (հէթէրիզմ) և պատմագիրը տալիս է մեզ մանրամասնութիւններ՝ թէ ինչպէս հայ աղջիկներ, նոյնիսկ ազնուական գերդաստանից, նուիրում էին իրենց կուսութիւնը Անահիտին և նրա տաճարների մէջ ընդունում էին այցելուներ, և թէ ինչպէս նրանք կարողանում էին յետոյ հեշտիւ ամուսնանալ և նրանց անցեալ ապրելակերպը ոչինչով չէր պակասացնում նրանց յարգը։

Զանազան անձեր մերժում են Ստրաբոնի յիշած սովորութիւնները և կասկածի տակ դնում նրա ասածների ճշմարտութիւնը, հիմնուելով այն փաստի վերայ, որ Անահիտը՝ մաքրութեան ու սրբութեան այդ ոսկիամայրը, չէր կարող առարկայ դառնալ պաշտամունքի մի այդպիսի անբարոյական և անմաքուր ձևի։

Այստեղ մեր նպատակը չէ բանավէճի մտնել, բայց անցողաբար մենք կասենք, թէ այդ ժխտումի հիմքը չափազանց անարժէք է և ոչ միայն Ստրաբոնի ասածի հակառակը չէ ապացուցանում, այլ ցոյց է տալիս թէ ինչքան հեշտ կարելի է սխալուել, երբ մարդ մօտենում է անցեալ սովորութիւնների և կարգերի, բարոյականի ժամանակակից ըմբռնումով և ոգով։ Կրօնական հէթէրիզմի գոյութեան հակառակորդները մոռանում են, որ կրօնական ոգով կատարուած մի նուիրաբերում, ոչ մի ամբարոյականութիւն չէր կարող պարունակել իր մէջ, նոյնիսկ արտայայտուած սեռական ձևով։ Այդ պարոնների փաստերից մէկն էլ այն մեծ նշանակութիւնն է, որ սովորաբար հայերս տուել ենք և տալիս ենք կուսութեան։ Այս վերջի պարագան ես չէ կարող հաստատել որ կրօնական հէթէրիզմ չէր կարող գոյութիւն ունենալ հայերի մէջ. ընդհակառակը այդ ցոյց է տալիս թէ որքան թանգագին էր համարուում նուիրել կուսութիւնը, որ այնքան մեծ արժէք ունէր։ Եթէ կուսութիւնը այդքան խիստ կերպով պահանջուել է հին ժամանակներում և պահանջուում է այժմ, դրա պատճառը պիտի փնտռել բոլորովին տարբեր մտայնութեան մէջ և որին մենք կանդրադառնանք։

Այս առթիւ մի փոքրիկ ժամանակակից օրինակ ցոյց կըտայ թէ՝ ինչպէս կարելի է խստապահանջ լինել կուսութեան տեսակէտից, բայց և այնպէս յարգել՝ որոշ դէպքերում, ոչ կոյսերին։

*Սուլթանը յաճախ իր հարէմներից մէկին նուիրում է իր գնահատած մէկ փաշային։ Այդ փաշան, կըսպաննէր այն աղջկան, որ ոչ կոյս վիճակի մէջ ներկայացուէր իրան, նոյնիսկ իբրև հարճ, այնինչ՝ Սուլթանի նուիրած կինը, նրա հարէմի մէջ բռնում է պատուոյ տեղը, իբրև գերազնուացած սուլթանական խալիֆայական հպումով։*

*Իսկ երբ աստուածային զոհաբերումով նուիրագործուած ներկայանում էին Անահիտին նուիրուած աղջիկները, միթէ կարող էր հարց լինել նրանց արարքի անբարոյականութեան կամ նրանց արժէքի նուաղացման մասին։*

*Մենք կարող ենք յիշել այստեղ պարոն Սամուէլեանի արժէքաւոր աշխատութիւնները (հրատարակած Ազգ. Հանդէսի մէջ) որոնցից մէկում պարոնը ընդունում է Ստրաբոնի յիշատակութիւնը և հաստատում այն փաստով՝ որ ճիշտ այդ ակնարկուած մեհեանի վայրում քրիստոնէութիւնը հիմնել է մի վանք, որի մուտքը եղել է արգելուած կանանց համար։ (Կարդալ նաև (Յովհաննէս Մամիկոնեան պատմագրի մէջ)։*

*Այս բոլորի հետ յիշենք Փաւստոսի մի այլ գլուխ. Ե. գիրք, գլ. Ա. Մենք արտատպում ենք այդ գլխից մի հատուած, որ առնչութիւն ունի կուսանոցների հետ. «Զանզի յիւրում կենդանութեան Ներսէսի էր շինեալ, շինեաց զայս կուսաստանս յամենայն գաւառս, զի որ միանգամ կուսանք և հաւատացեալք իցեն՝ անդր ժողովեսցին ի պահս և յաղօթս, և կերակրել յաշխարհէ և յիւրաքանչիւր ընտանեաց։ Զայն աւերել հրամայէր Պապ Թագաւորն եւ զկուսանսն հաւատացեալս տայր հրաման ի խառնակութիւն պղծութեան»։*

*Այստեղ մեզ համար հետաքրքիրն այն է՝ որ այդ կուսանոցների մէջ գտնուած աղջիկները, հէնց որ փակւում են կուսանոցները, իրանք իրանց տալիս են «ի խառնակութիւն պղծութեան». բայց թէ ինչու. ահա այդտեղ մենք թոյլ ենք տալիս չը համաձայնելու Փաւստոսի հետ, որ նոյնիսկ ծիծաղելի լինել աչք առնելով, գալիս է Պապի դէմ եղած արտառոց ամբաստանութիւնների վերայ մի հատ ևս բարդելու։ Որ Պապը դէմ եղած լինէր կուսանոցների, այդ հասկանալի է, բայց թէ մասնաւոր հրաման տար որ նրանց մէջ գտնուող կոյսերը պոռնկութիւն անէին, այդ արդէն աներևակայելի է մի թագաւորի կողմից։ Ոչ մի պատճառ չկար, որ նա այդքան մասնաւորաբար շահագրգռուած լինէր այդ կոյսերի վարելիք ապագայ կեանքովը, երբ նա շատ աւելի կարևոր զբաղմունքներ ունէր։ Այդ հատուածը մենք կարող ենք երկու ձևով բացատրել. նախ կարող ենք ենթադրել որ այդ*

կուսանոցները մի տեսակ ապաշխարանքի տուներ էին, որտեղ բերում էին հեթանոսական «մեղանչումների» մէջ գտնուած աղջիկներ։

Երկրորդ և աւելի հաւանօրէն, այդ կոյսերը հէնց որ ստանում էին ազատութիւն, վերընդգրկում էին իրանց նախկին հեթանոսական սովորութիւնները, որոնք՝ զարմանալի չէ որ քրիստոնեայ պատմագրին թուէին «խառնակութիւն պղծութեան»։

Հետևաբար Փաւստոսի հատուածներից, ինչպէս նաև Ստրաբօնի վերոգրեալ այն յիշատակութիւնից, մենք կարող ենք ազատօրէն եզրակացնել, որ սեռական ծէսերը՝ հայ կրօնական ըմբռնումների մէջ՝ գոյութիւն են ունեցել անցեալում։ Եթէ մենք ուսումնասիրենք զանազան հայկական սովորութիւնները, դեռ կենդանի պահուած գիւղերում, զանազան սուրբերի ուխտագնացութիւններն, ևայլն, մենք կարող ենք այդ սովորութիւնների և նրանց հետ կապուած նախապաշարումների մէջ գտնել ուրիշ բացայայտ փաստեր՝ այս մեր վերջին եզրակացութիւնը ապացուցանող։ Բայց առ այժմ մենք բաւականանում ենք այսքանով, քանի որ մեր գլխաւոր նպատակն է ի յայտ բերել այն՝ որ կրօնական ըմբռնումները և սեռական ծէսերն ու յարաբերութիւններն եղել են հաշտ իրար հետ մեր անցեալ կեանքում։

Այս կէտը պարզելուց յետոյ, անցնենք երկրորդ հարցին.— Ի՞նչ է եղել անցեալում հայոց մէջ ամուսնութեան ըմբռնումը, և ի՞նչ ծէսերով է արտայայտուել։

Մենք պարտաւորուած ենք այս հարցի մասին ևս շատ ամփոփ և սեղմ կերպով խօսել և բաւականանալ միայն գլխաւոր կէտերը շօշափելով, քանի որ մեր բուն նիւթից դուրս է ուսումնասիրել, իր բոլոր մանրամասնութիւնների մէջ, հայկական ամուսնութիւնը, նրա իրաւական հիմքերը և նրա նախնական նկարագիրը։ Մենք կակնարկենք նրան այն չափով, որչափով էական է մեր նիւթի պարզաբանութեան համար։

Բաւական է ծանօթանալ հայկական այժմեան սովորութիւնների հետ, համոզուելու համար, որ հայ ամուսնութիւնն անցել է այն բոլոր փազերից, կրել է այն բոլոր դրօշմները, որոնք յատուկ են կիսաքաղաքակիրթ ընկերութիւնների։ Այն բոլոր վերջամնացութիւնների մէջ, որոնք մենք գտնում ենք ազգագրական տուեալների մէջ՝ պահուած յետամնաց կամ հեռաւոր գիւղերի թանկագին անկիւններում, կան գլխաւորաբար մի քանի սովորութիւններ, որոնք ամենայստակ կերպով պահպանել են թէ անցեալի ոգին և թէ անցեալ բարքերի և հաւատալիքների դրօշմը։ Հէնց այն հանգամանքը, որ այդ սովորութիւնները այնքան կենդանի և

ամբողջ պահպանուել են, խրատունք է տալիս մեզ ենթադրելու, թէ նրանք բաղդատաբար մերձաւոր անցեալի յիշատակներ են, դեռ չմոռացուած ժամանակի փոշիների ներքեւ։—Այդ սովորութիւններն են, այն բոլոր ծիսակատարութիւններն ու ձեականութիւնները, որոնք կատարւում են օճախի շուրջ, ինչպէս նաև նրանք՝ որոնք կապ ունին խօսք-կապի, նշանդրէքի և խնամիական կապերի հաստատման տարբեր րոպէներում։

Այդ բոլոր սովորութիւնների մէջ երկու գլխաւոր տարր կայ. մին կրօնական՝ միւսը աշխարհային. մին միսթիկ, միւսը դրական։

Եթէ մեր նպատակը լինէր ուսումնասիրել առանձնապէս ամուսնութիւնը, կարող էինք ցոյց տալ թէ այդ երկուքը որքան սերտ կերպով կապուած են եղել սկզբում իրար հետ, միսթիքական կազմել է միայն դրականի մի մասը, նրա իրագործման եղանակը։ Բայց այդ առայժմ թողնում ենք, և արձանագրում ենք միայն ներկայ սովորութիւնների մեզ տուած փաստը։

Դրականը, աշխարհային տարրը, կազմում են այն բոլոր ձեակերպութիւնները, որոնք կապուած են գլխագին հարցի վճռումին և երկու ընտանիքների մէջ առեղծուող պայմանագրութեան հետ։

Մենք տեսնում ենք որ նշանդրէքի, խօսքկապի գործողութիւնները ներկայանում են առ ու ծախի պայմանագրութեան (contrat) ձեով։ Մենք տեսնում ենք այդ սովորութիւնների մէջ այն բոլոր մտահոգութիւններն ու պայմանները, փոխադարձ պարտականութիւններն ու իրաւունքները, որոնք առանձնայատուկ են երկկողմանի պայմանագրութիւններին. (contrat, synallagmatique)։ Մենք գտնում ենք նաև որ այդ պայմանագրութիւնը կրում է ինչ որ խորհրդանշանական (sacramental) և հանդիսաւոր (solennel) բնոյթ. դրա համար գործածւում են որոշ խօսքեր, որոշ ժէսթեր, շարժումներ, որոշ անձնաւորութիւնների ներկայութեան պահանջքն է զգացւում եայլն։ Այս բոլորը կատարուելուց, վերջանալուց յետոյ, պայմանագրութեան կնքումից յետոյ, նրա ընտեղծած պարտականութիւնների հիմնական իրագործման րոպէին՝ երևան է գալիս՝ ամենաշեշտուած կերպով, երկրորդ տարրը, կրօնականը։ Հարսանիքի և վաճառուած էակի յանձնումին առթիւ, վերջ են գտնում նիւթականի մտահոգութիւնները, նրանք ստանում են երկրորդական բնոյթ, և առաջի տեղն են բռնում այլեւ բարոյական, կրօնական և ընկերական մտահոգութիւնները։ Ահա այդ րոպէին եկեղեցին՝ իբրև կրօնական հիմնարկութիւն՝ իր հովանաւորութեան տակն է առնում ամբողջ հարցը։

Մենք գտնում ենք սակայն, որ հայ քրիստոնէական եկեղեցին, շատ մեծ ազդեցութիւն է կրել իրան նախորդող հասա-

րակակարգերից և ըմբռնումներից։ Նրա ծիսակատարութիւնները կրում են նիւթական, աշխարհային մտահոգութիւնների կնիքը. և առաջին քրիստոնէական ժողովներում (տես Աշտիշատի ժողովների կանոնները) ամուսնական հարցերում իրար չխաբելու, իրարու չը կեղծելու կանոնն է դրւում։ Նոր եկեղեցին զանազան սանկցիաներ է ստեղծում ստիպելու համար իր դրած կանոնի կիրառումը, սանկցիաներ՝ որոնք ինք ընդօրինակում է պարզապէս անցեալից։ Այդ նոր հիմնարկութիւնը՝ պսակի համար ոչ միայն օգտուում է պայմանադրական որոշ ձևերից, որոշ խորհրդանշական ֆօրմուլաներից, այլ հէնց ամուսնութեան բուն նպատակը պահպանում է այնպէս, ինչպէս գոյութիւն ունէր իրանից առաջ։

Այդ նպատակը՝ որդեծնութիւնն է.—Առանց դրա պահանջած արարքների գործադրութեան, ամուսնութիւնը համարւում է ըստ էութեան չեղեալ։ Իսկ որևէ պատճառով այդ նպատակի ոչ իրականացումը, դարձնում է ամուսնութիւնը լուծելի։

Այնպէս որ կարելի է ասել թէ քրիստոնէական եկեղեցին բացի իր հովանաւորութեան տակ առնելուց, սկզբում ոչինչ նոր բան չի աւելացնում ամուսնութեան։ Նա բաւականանում է սրբագործելով միայն կատարուած ակտը, տալով նրան իր օրհնութիւնը, քահանայի՝ այսինքն իր պաշտօնէի միջոցով։

Իսկ ո՞րն է հայ ամուսնութեան մէջ հինը, նախաքրիստոնէական տարրը։

Մի ակնարկ գիւղերում պահպանուած սովորութիւնների վերայ և մենք իսկոյն կը տեսնենք այդ հինն իր ամբողջութեամբ և կարող ենք հեշտութեամբ վերականգնել իր գլխաւոր գծերին մէջ այդ թանգագին հնութիւնը։—

Սկսած «Տաշտադրօնքի» օրից, այն բոլոր սովորութիւնները՝ որոնք գոյութիւն ունին, կազմում են հեթանոսական ամուսնութեան միսթիք տարրերը։

Եզան մորթելը, մեռեալների գերեզմանների օրհնութիւնը, այդ ամուսնութեան տարում մեռեալներ ունեցող ազգականների կամ հարևանների տուն այցելութիւնը, բաղնիսը, ածիլուելը, հալաւօրհնէքը, հարսնառի գնացքը, հարսին զուգումը, հինայով զարդարումը, նրա գօտին կապելը, փեսին և հարսին նուիրուած երգերը, փեսուն և իր զոքանչին մէջ տեղի ունեցած ձևականութիւնները, (ծիծը համբուրել ևայլն), բացի աղջկան հրապարակային յանձնումի տեսարանից, որ լրացումն է պայմանագրութեան գործադրման, միացեալ բոլորը զուտ միսթիքական կրօնական ըմբռնման հետևանքներ են, և կրում

են կրօնական բնոյթ։ Իսկ բուն արարողութիւնը սկսւում է մեկնումի հետ։ Հայրենական տան օճախի համբուրումը նորամուսնացեալների կողմից, նրանց մեկնումը աղջկան տանից, նրանց այցելութիւնը «գիւղի օճախին» նրանց ընդունելութիւնը փեսու մօր կողմից. շեմքի առաջ կատարուած ողջակէզը, հարսի և փեսի գլխին պտուղներ շաղ տալը, տան մեծի կողմից նորապսակների օրհնութիւնը, հայրական տան օճախի նորից համբուրումը, ահա պսակը այնպէս՝ ինչպէս կատարում էին հեթանոսական հայերը քրիստոնէութիւնից շատ առաջ և հին ժամանակներում գուցէ մինչև Արտաշէսի օրերը, երբ պտուղների տեղ «Տեղ տեղայր ոսկի ի փեսայութեան Արտաշէսի...»

Այս բոլոր արարողութիւնները կապւում են օճախի պաշտամունքի հետ. (culte de foyer)։ Այդ պաշտամունքի հայերի մէջ գոյութիւնը հաստատող փաստեր այնքան առատ են, որ չէ կարելի կասկածել այդ մասին. միայն թէ մեր նիւթից դուրս է մտնել այդ մանրամասնութիւնների մէջ։

Մենք դիտել կը տանք միայն, որ քրիստոնէական պսակը, եկեղեցի գնալը, մեր յիշած սովորութիւնների մէջ մտնում են միջանկեալ ձևով. և նոյն իսկ եկեղեցուց յետոյ, նորապսակները վերադառնում են աղջկայ տունը, շարունակելու համար կարծես ընդմիջուած բուն արարողութիւնները։

Այդ բոլոր արարողութիւնների մէջ մենք տեսնում ենք միայն մի պայմանագրական մտահոգութիւն—աղջկայ՝ այսինքն վաճառուած ապրանքի յանձնումը, և նրա հրապարակաւ իր նոր տէրերու մօտ առաջնորդուելը. իսկ մնացեալներն ամբողջովին կըրում են կրօնական մտահոգութիւնների դրօշմ. յարգանք աղջկայ հօր օճախին. յարգանք փեսու ընտանեկան օճախին. զանազան ձևականութիւններ չար ոգիների դէմ. միջոցներ հաշտեցնելու՝ նոր օտարականի հետ՝ ընտանեկան օճախը, որ ծառայում է նախնիքների հոգու համար իբրև խորան։

Գուցէ ժամանակի ընթացքում կորած լինեն որոշ մանրամասնութիւններ, բայց գլխաւոր գծերը և էական ծէսերը սրանք են, պահպանուած ամբողջովին մեր սովորութիւնների մէջ։

Մինչև օրս էլ գոյութիւն ունեցող «օճախի ամուսնութիւնը» կարող է մեր ասածների համար իբրև վճռական փաստ ծառայել։ Այդ ամուսնութիւնը կատարւում է գլխաւորաբար հինգ պարագաներում։ Ա) Երբ գիւղում եկեղեցի չկայ. բ) Երբ եկեղեցում թաղում կայ. գ) Երբ ամուսնացողը մի այրի կին է. դ) Երբ եկեղեցին մերժում է պսակել չհասութեան պատճառաւ. ե) Երբ ամուսնացող աղջիկը մաքուր անցեալի տէր չէ, կամ չէ կարողա-

ցել պահպանել իր կուսութիւնը։ Ժողովուրդը, որոշ գիւղերում նոյն իսկ աւելի մեծ նշանակութիւն է տալիս «օճախի պսակին», «որովհետև, ասում է նա, օճախն է մեզ կերակրում և ոչ թէ եկեղեցին»։

Ուրեմն այս բոլորից յետոյ, կարող ենք վստահաբար ասել, թէ ինչ ըմբռնում ունէին հեթանոսական հայերը ամուսնութեան մասին. և թէ ինչ ձևերով նրանք իրագործում էին ամուսնական միութիւնը։ Մենք ծանրացանք այս հարցի վերայ, որովհետև այդ պարզելուց յետոյ մենք կարող ենք տալ մի հարց.—Որտեղ է այս բոլոր ծիսակատարութիւնների միջոցին հեթանոսական կրօնի ներկայացուցիչը, որտեղ է քուրմը, մասնակի, ընտանեկան աստուածների հովանաւորութեան վերայ աւելացնելու համար ընդհանուր աստուածների օրհնութիւնը և պաշտպանութիւնը։— Այսքան կենդանի մնացած հեթանոսական սովորութիւնների մէջ, անկարելի է որ կորած լինի մի այնպիսի կարևոր անձնաւորութիւն, որպիսին է քուրմը։ Եւ արդարև նա կորած չէ։— Բաւական է յիշենք Թաւորի դերը, բաւական է մի րոպէ նրան տեղաւորենք, իրան այնքան համապատասխան հեթանոսական պսակի միջավայրին մէջ, և ահա այդ բացը կը լեցուի, այդ վերոյիշեալ պակասը կը լրանայ ամբողջովին և կատարելապէս։— Նրա միսթիկ անհատականութիւնը անմիջապէս կը զգենու քրմական խոյրը և պատմուճանը, և մենք կը գտնենք, ընդհանուր ընկերական աստուածների ներկայացուցչին, որ աւելի քան հովանաւորում է երկու ընտանիքների և երկու անձերի մէջ կատարուած ամուսնական միութիւնը, և ապահովում է իր մոգական ոյժով, նրա բուն սրբազան նպատակը, որդեծնութիւնը։

Այսպիսով մենք կարող կը լինենք ըմբռնել Թաւորի միսթիքական բնոյթը, որ անցեալի մի կենդանի յիշատակն է։— Մենք կարող կը լինենք բացատրել նրա հետաքրքիր անձնաւորութիւնը և նրա ծագումը։ Բայց դրանով չէ վերջանում մեր անելիքը։

Այժմ մեզ մնում է բացատրել այն սեռական յարաբերութիւնների հետքերը, որ նկատեցինք Թաւորի և սանամօր միջև և որոնք պահպանուել են սովորութիւնների մէջ։—Այդ բացատրութիւնով միայն կամբողջանայ Թաւորի անցեալում կատարած դերի պատկերացումը, և լրացած կըլինի նրա նկարագրի պարզաբանումը։

Վերևում առիթ ունեցանք յիշելու այն զանազան սովորութիւնները, որոնք բացատրուում էին սեռային ամօթով։ Մենք յիշեցինք նաև այն սովորութիւններն, որոնք այնքան մեծ դեր

էին տալիս Բաւորին, կուսութեան հաստատման բոպէին, և կնոջ ամլութեան դէպքում։ Այստեղ կաւելացնենք մի սովորութիւն ևս, աւելի պարզելու համար վերև յիշուած հանգամանքները։

Գանձակում և Թիւրքիայի որոշ գաւառներում, Բաւորը քնում է փեսայի հետ մի անկողնում, հարսանիքի առաջին գիշերը։—Այս սովորութիւնը կարելի է բացատրել նախ՝ շատ պարզ կերպով. որովհետև փեսան չպէտք է մօտենայ հարսին, նախ քան նարօտի վար առնուելը, ապա ուրեմն Բաւորը մի տեսակ հսկիչի դեր է կատարում այդտեղ։ Այդ սովորութիւնն առանձնապէս կարելի է բացատրել վերոգրեալ պարզ ձևով. բայց եթէ յիշենք որ հարսը գնում է հանուեցնել քաւորին ամուսնութեան առաջին գիշերը, արդէն այդ երկու սովորութիւնների միջև ստեղծւում է մի շատ կարևոր առնչութիւն։ Մենք շատ անգամ սովորութիւնների մէջ գտնում ենք այդպիսի հիմնական փոփոխութիւններ, ինչպիսին այստեղ. այդ կէտը աչքի առաջ ունենալով արդեօք չափազանց յանդգնութիւն կըլինէր եզրակացնել, թէ փեսան չէ եղել միշտ առաջին գիշերը Բաւորի կողքին քնողը, և հաւանօրէն ժամանակի ազդեցութիւնն է որ փեսային տուել է հարսի դերը։—Այդպիսի մի եզրակացութիւն մեր կողմից ոչ միայն յանդուգն, այլև անարդարանալի կըլինէր, եթէ այդ լինէր մեր միակ փաստը։ Բայց եթէ երբէք մենք արդէն ունենք որոշ տարբեր փաստեր, վերոգրեալ սովորութիւնը և նրա բացատրութիւնը կարող են, իբրև լրացուցիչ տարր մեծապէս օգտակար լինել մեզ։

Ունենք ուրիշ փաստեր ևս.—

Մենք այդ հարցին կը պատասխանենք այս։—Մեզ համար մի փաստ է հարսի գօտին կապելու և ամլութեան դէպքում, Սանամօր գօտին արձակելու վերոյիշեալ սովորութիւնները։

Գօտին, ինչպէս վերև տեսցինք, միշտ գործածուել է իբրև սիմվօլ կնոջական սեռական պատուին։ Եւ երբ Բաւորը կարողանում է այնքան ազատ կերպով ձեռք տալ նրան, դա ևս մի սիմվօլիկ հաստատումն է նրա իրաւասութիւններին։

Մեզ համար փաստ է այն խիստ արգելքը, որ դրւում է Սանամօր և Կնքահօր կամ Բաւորի յարաբերութիւնների մէջ. և որի ներշնչումով քրիստոնեայ եկեղեցին՝ ստեղծում է ազգակցական առաջին կամ երկրորդ աստիճանի ամուսնական արգելք երկուսի միջև։ Եկեղեցին յաճախ դիմել է այդ միջոցին՝ արգելելու համար սեռական յարաբերութիւնն որոշ ազգակիցների մէջ. ազգակցական չհասութեան հիմնարկութիւնը և նրա աստիճանական զարգացումը կենդանի ապացոյց է դրան։

Այս փաստերը ի՞նչ են ապացուցանում սակայն։ Մենք ա-

սացինք որոշ սեռական յարաբերութիւն։ Այդ բացատրութիւնը պէտք է ըմբռնել աւելի լայն իմաստով։ Կարծող ենք ուղղակի պնդել թէ Սանամօր և Թաւորի կամ քուրմի միջև, (որի ժամանակակից ներկայացուցիչն է Թաւորը), պարտաւորեցուցիչ է եղել բացարձակ սեռական յարաբերութիւն, բառի նեղ իմաստով։ Մեզ թւում է որ այդ մի քիչ ծայրայեղ կըլինէր։ Մաթեմաթիքական ճշտութեամբ չենք կարող բնորոշել այդ յարաբերութիւնների սերտութեան աստիճանը։ Միայն թէ այս փաստերի հիման վերայ մենք կարող ենք եզրակացնել այն՝ որ սեռական հարցերում՝ որոշ էնթիմ կապ գոյութիւն ունեցել է այդ երկուքի միջև, և այդ զուտ կրօնական ըմբռնման հողի վերայ։

Միայն թէ այս մեր ասածը որպէսզի կարելի լինի՝ անհրաժեշտ են որոշ պայմաններ. Նախ հարկաւոր է, որ կրօնական ըմբռնումների մէջ որոշ դեր խաղան սեռական հարցերը։ Մեր վերօգրեալ տողերով մենք պարզեցինք որ իսկապէս հայ նախաքրիստոնէական կրօնքը պարունակել է իր մէջ սեռական տարր, հետեւաբար այդ հարկաւոր պայմաններից մին, էականը արդէն գոյութիւն ունի։ Երկրորդ՝ հարկաւոր է որ այդ յարաբերութիւնը ծառայի որոշ նպատակի, նրա գոյութիւնը պէտք է բացատրուի որոշ կարիքով, որոշ օգտակարութիւնով։

Անա այստեղ ներկայանում է մի էական խնդիր։ Ի՞նչ կարող է լինել այն կարիքը կամ օգտակարութիւնն, որից ստեղծուել են այդպիսի յարաբերութիւններ։

Այդ կարիքը կամ օգտակարութիւնը և կամ երկուսն էլ պէտք է փնտրենք ամուսնութեան ըմբռնման և իրականացման մէջ։ Մենք առիթ ունեցանք խօսելու դրանց մասին, և գտանք երկու կարևոր տարրեր այդ օրինական հիմնարկութեան (Institut) մէջ. մին դրական կամ գործնական—(աշխարհային) առ ու. ծախի պայմանագրութիւնը—միւսը միսթիք կամ կրօնական։

Այդ երկու կազմական (constitutif) տարրերի մէջ պիտի փնտռել ուրեմն երկրորդ պայմանի գոյութիւնը։

Քննենք։—

Երկու ընտանիքներ, որոշ պայմանագրութիւն են կնքում, ամուսնացնելու իրանց որդիներին, կամ աւելի ճիշտ՝ տղուն հայրը սակարկում է և գնում իր ապագայ խնամիից նրա աղջիկը, փոխարէն վճարելով որոշ գումար. այդ ապրանքը յանձնելի է որոշ պայմանաժամով. այդ պայմանաժամի միջոցին ապրանքատէրը պարտաւոր է պահպանել իր մօտ թողուած աւանդը, նա պէտք է ապրանքը յանձնի տիրոջ, ժամանակը լրանալուն, ապահով անխառն վիճակի մէջ։ Այդ ապրանքը ներկայացնում է մի քանի

առանձնայատկութիւններ, որոնք նրա արժէքն են կազմում. բայց գլխաւորն է այն՝ որ այդ ապրանքը ուրիշի գործածութեան առարկայ եղած չըլլինի. լինի կոյս։ Ահա թէ ինչպէս կուսութեան հիմնական գաղափարը ծնունդ է առնում, և այդքան խիստ կերպով պահանջւում է այն ցեղերի մէջ, որոնք վաճառման հիման վրայ են դրած ամուսնութիւնը։ *)

Ապրանքը գնողի համար էական է նախքան տիրանալը, ապահով լինել որ ինկապէս ապրանքը զուտ է, եղծուած չէ։ Այդ քննութիւնն երկու կողմերը չեն կարող անկողմնակալ կերպով կատարել, որովհետև շահագրգռուած են հաւասարապէս։ Ուրեմն մի չէզոք անձնաւորութեան պիտի յանձնել այդ փորձագիտական քննութիւնը։ Այդ վաճառման պայմանագրութիւնը (contrat) լինելով հանդիսաւոր (solennel) խորհրդանշական (sacramental) որոշ վկաների ներկայութիւնը եղել են անհրաժեշտ, մանաւանդ կրօնական վկաների։ Եւ ամենայն հաւանականութեամբ քուրմերն եղել են առաջնորդներ՝ այդ տեսակ պարագաներում իբրև ամենալաւ ծանօթ ծէսերին և դիցական հաճութիւններին։ Շատ հասկանալի է որ նրանց էլ յանձնուէր այդ քննութիւնը։

Բայց նրանք՝ նախընտրելի են այդ քննութեան համար մի այլ տեսակէտից ևս. ամուսնութեան մէջ կայ ինչ որ միսթիք, կրօնական տարր։ Ո՞րն է այդ տարրը—նախ այն՝ որ մի անհատ ծնուած որոշ տանիքի տակ, որոշ օճախի ծնունդ, որոշ նախնիքների սերունդ, պէտք է մտնի մի օտար տուն, պէտք է դառնայ այդ տան մէկ անդամը և ընդգրկի նրանց նախնիքներին և նրանց օճախը։ Ուրեմն դրա համար հարկաւոր է, որ մի կերպ այդ երկու ընտանիքների նախնիքների ոգին, նրանց ընտանեկան աստուածները, հաշտուեն այդ փոփոխութեան հետ։—Այդ համաձայնութեան, այդ հաշտեցման գործի համար ինարկէ քուրմերն են ի պաշտօնէ կոչուած։ Բացի այդ նախնիքների հաշտեցման հարցը, կայ և մի այլ պարագայ—կան չար ոգիներ—որոնք կարող են յաւիտենական դժբաղդութեան աղբիւր դառնալ տղուն ընտանիքին համար. նրա օճախի մարելուն պատճառ լինել, արգելելով որդեծնութիւնը. անկարողութեան մատնելով այրը և կամ ծնուած զաւակներին այսահարելով և սպանելով։ Պիտի չէզոքացնել այդ մեծ վտանգը։—Ուրեմն ոչ միայն պիտի յանձնել այդ խնամքը քուր-

*) Ահա և ինչու այդ կուսութեան խստապահանջութիւնը կարող է գոյութիւն ունենալ կրօնական հէթէրիզմի հետ միաժամանակ, որովհետև այդ դէպքում ոչ թէ ապրանքի կեղծումի հարց կայ, այլ ընդհակառակը բացայայտ մի իրողութիւն, որ բոլորի կողմից վայելում է յարգանք իբրև կրօնական մի ակտ։

մին, այլ և պէտք զգուշանալ որ հասարակ, կողմնակի մարդիկ, որքան կարելի է քիչ գործ ունենան՝ որոշ էական հարցերում, նոր ամուսնացողների հետ, քանի որ նրանք՝ թշնամական կամ տգէտ արարքներով՝ կարող են չար ոգիներին առիթ տալ ազդելու։ Այս մտահոգութեան ապացոյցը մենք գտնում ենք ազգային սովորութեան, ինչպէս նաև այն զանազան միջոցների մէջ, որոնք գործ են դրւում նորապսակների պաշտպանութեան համար։

Կայ մի այլ կարևոր հանգամանք, որ կապուած է կաղմախօսական երևոյթի հետ։ Դա առաջին սեռական միացման առթիւ առաջ եկող կուսութեան խախտումը և արեան հոսումն է։

Այստեղ դարձեալ պարտաւորուած ենք բաւականանալ ակնարկելով միայն այն մեծ նշանակութեան, որ բոլոր նախնական ցեղերը տալիս էին և տալիս են արիւնին։—Արիւնը համարւում էր ոչ միայն պիղծ, այլ և աստուածների և բարի ոգիների անհաճոյ մի տարր։ Արիւնի տէր լինել, մեծ սոսկում էր պատճառում։ Մենք չենք ուզում այստեղ կանգ առնել այն բոլոր երևոյթների վերայ, որոնք առաջ են գալիս այս ըմբռնումից. մենք կարող ենք յանձնարարել բրօֆ. Դիւրկհայմի աշխատութիւնները հետաքրքրուողների համար։ Միայն մենք կը յիշենք այն՝ որ այդ ըմբռնումի հետևանքները զգալի են մեր քրիստոնէական ըմբռնումների մէջ. դաշտանի շրջանում եղող կինը համարւում է անմաքուր և անարժան մօտենալու հաղորդութեան։ Իսկ ժողովուրդը պահել է սովորութիւններ, որոնք շեշտում են մեր ասածը. նոր ծննդաբերութիւն ունեցող կնոջ արգելւում է ձեռք տալ օճախին կամ կերակուրի ամաններին, նրա գործածած իրեղէններն ու ամանները մաքրւում են որոշ ծէսերով։ Դաշտանի մէջ գտնուող կինը չէ մօտենում օճախին, և այլն։

Մեկնելով նախնական ցեղերի արիւնի մասին ունեցած այս որոշ ըմբռնումից, մենք շատ պարզ կարող ենք հասկանալ՝ թէ կուսական խախտումի երևոյթը պատճառ դառնար մեծ մտահոգութիւնների—կրօնական մտահոգութիւնների։ Շատ հասկանալի է նաև որ միջոցներ ձեռք առնուէին այդ մասին, և որի խնամքը բնական էր որ յանձնուէր Քուրմին։ Այս երևոյթը ներկայումս գոյութիւն ունի եգիպտական ֆէլլահների մէջ, որոնք կուսութեան խախտումը կատարում են մասնաւոր կանանց ձեռքով *)։

---

*) Իսկ Սիբիրայում, նոյն իսկ քրիստոնէական ցեղեր կան, որոնք շարունակում են կուսութեան խախտում, քահանայի ձեռքով. բայց մենք այս յիշում ենք անցողաբար, որովհետև չենք կարողացել հաստատել այս սովորութեան վաւերականութիւնը։

Այս բոլորից յետոյ պարզ է, որ անպայման որոշ կարիք և որոշ օգտակարութիւն էր ներկայացնում քուրմերի և նորապսակ կոյսերի միջև սեռական յարաբերութեան գոյութիւնը։

Աչքի առաջ ունենալով այս բոլոր տուեալները, ինչպէս նաև այն՝ որ մեհեանները ծառայել են սեռական պաշտամունքների կենդրոններ, որոնց մէջ կատարուել են որոշ սեռական նուիրաբերումներ, մեզ թւում է որ ոչ մի չափազանցութիւնների մէջ ընկած չենք լինի, եթէ հասնենք այն եզրակացութեան, որ ամուսնութեան առթիւ որոշ սեռական յարաբերութիւն եղել է Քուրմերի և ամուսնացող աղջիկների միջև *)։

Ուրեմն այսպէս մենք տեսնում ենք, որ նպաստաւոր, նոյն իսկ հրամայողական պայմաններ կային մի ծիսակատարութեան համար, որի հետքերը նշմարում ենք աղօտ կերպով ժամանակակից սովորութիւնների մէջ։ Մենք տեսնում ենք նոյնպէս, որ այս վերջին վերլուծութիւնով աւելի է շեշտուում մեր ասածը՝ թէ Քաւսարը իր անձին մէջ պատկերացնում է նախկին քուրմը։

Ահա ուրեմն այժմ ամբողջանում է Քաւսարի տիպը, նրա դերը պարզուում է, նրա ծագումը որոշուում է համոզիչ կերպով։

Մենք այս պարզումով տեսնում ենք միանգամ ևս թէ ինչպէս քրիստոնէութիւնը պարտաւոր է եղել յարգել ժողովրդական հաւատալիքները, թէ ինչպիսի զգոյշ միջոցներով աշխատել է սի-րաշահել հեթանոս հայութիւնը, և ինչպիսի նուրբ տակտիկայով է հաշտեցրել հինը նորի հետ։

*) Մեր նիւթից դուրս է ծանրանալ կրօնական հէթէրիզմի մասին. այդ երևոյթի համար տրուում են զանազան բացատրութիւններ։ Ոմանք տեսնում են դրա մէջ մի յիշատակ այն ժամանակների՝ երբ կնոջ սեփականութիւնը նոր էր սկսում, և այդ սեփականացումը կարելի էր դառնում գոնէ մի անգամ ընդհանուրին պատկանելուց յետոյ. կինը՝ իբրև քաւուց հատուցում այն բոլորին, որոնք զրկուում էին նրան վայելելու իրաւունքից, նախ քան մէկին պատկանելը՝ տալիս էր իրան ընդհանուրին։ Ուրիշներ՝ այդ երևոյթի մէջ գտնում են սեռական պահպանման բնազդի հասարակական արտայայտութիւնը։ Այդ բոլոր բացատրութիւնները կարող են հաշտուել իրար հետ, եթէ նկատի առնենք որ ամեն մի տարբեր բացատրութիւն, տարբեր շրջանի առանձնայատուկ հոգեբանութիւնով է բացատրում այդ երևոյթը։ Քանի զարգանում է մարդկային միտքը, նա կարող է որոշ ծանօթ ակտերը գործածել, տարբեր նպատակներով, մինչև որ իր զարգացման չափը արգելք լինի այդ ակտի կիրառումին։ Ահա ինչու միաթիք հէթէրիզմը կարող է ծագած լինել զանազան պատճառներից, բայց որի ձևերը, ժամանակի ընթացքում, կարող են գործածուել տարբեր նպատակների համար, ինչպէս օրինակ մեր վերև յիշածների, մինչև որ այդ սովորութիւնը ջնջուի կրօնական ըմբռնումների և սեռական յարաբերութիւնների խորթացումով, մինչև որ կրօնքը և նրա էթիքան աւելի վերացական դառնալով վանեն հին հասկացողութիւնները։

Մեզ կարող են առարկել որ կնքահօր քրիստոնէական ըմբռնումի և մեր եզրակացրած Քաւորի ծագումին մէջ ոչ մէկ կապ չէ կարող լինել, քանի որ եկեղեցական օրէնքներն ոչ մի հետք չեն կրում և չեն էլ կարող կրել այն քրմական բնոյթից, որ մենք յատկացնում ենք Քաւորին։ Եւ աւելի առաջ երթալով կարող են ապացուցանել, թէ տարբեր հնդեւրոպական ազգեր ունեն նաև կնքահայրութիւնն իրանց եկեղեցական օրէնքների մէջ, և սակայն նրանց կնքահայրի դերը ոչ մէկ քրմական, կամ հեթանոսական վերջնաճնացութեան հետ չէ կապուում։

Այդ առարկութիւններին մենք կը պատասխանենք։ Հայ քրիստոնէութիւնը ներշնչուած է իր հիմնական օրէնքների և ծէսերի համար, յոյներից։ Եթէ նոյն իսկ յոյն կնքահայրը չէ ներկայացնում նոյն վերջնաճնացութիւնը, ինչ որ մեր քաւորն է ներկայացնում, նոյն իսկ այդ՝ չէ կարող քանդել մեր եզրակացութիւնը, որովհետև հայ եկեղեցին ընդօրինակելով կնքահօր պաշտօնը մի տարբեր եկեղեցուց և տարբեր ըմբռնումից, շատ լաւ կարող էր յարմարացնել այդ պաշտօնը հայկական քուրմի դերին, այդպէսով սիրաշահելու համար ժողովրդի վստահութիւնը և հաւատքը, որը դուցէ չհամաձայնուէր հպատակուել նոր եկեղեցւին, եթէ չըգտնէր նրա պատկին մէջ, իր հեթանոսական պատկի տուած պահովութիւնները։ Հեթանոսական մեհեանները եկեղեցիի վերածող, հեթանոսական տօները քրիստոնէական տօների հետ կապող, հեթանոսական քուրմերից քահանաներ ջօկող քրիստոնէութիւնը միթէ չէր կարող և այդ խորամանկութիւնը ի գործ դընել։ Այս մեր յիշած գործելակերպը չէ հակասում նրա ընդհանուր գործելակերպին։

Պարոն Սամուէլեան, վերև յիշածս աշխատութիւնների մէջ հետաքրքրւում է Քաւորի անձնաւորութիւնով և վերլուծելով վերջաճնաց հայկական սովորութիւնները, հասնում է նոյնպէս այն եզրակացութեան, որ դրանք ապացուցանում են որոշ սեռական յարաբերութեան գոյութիւնը քաւորի և սանամօր միջև։ Բայց մեկնելով այդ կէտից՝ նա հասնում է մի բոլորովին տարբեր եզրակացութեան, նրա անձնաւորութեան մասին։ Պարոն Սամուէլեան կարծում է տեսնել Քաւորի անձի մէջ նախկին հայկական աւատական իշխանը, և այդ սեռական յարաբերութեան մէջ, հայկական jus prima noctis-ի իրաւունքը։ *)

Մենք չենք բաժանում յարգելի պարոն Սամուէլեանի կարծիքը, գլխաւորաբար երկու պատճառներով։ Առաջինը պարոն Սա-

*) Ազգագրական Հանդէս, XVIII գիրք էջ 74—77 Մայրական իրաւունք Պ. Խ. Սամուէլեանի։

*մուէլեան անուշադիր է թողնում Թաւուրի դերի միստիքական մասը։ Մենք գիտենք որ ոչ մի տեղ, ինչպէս նաև հայերի մէջ, աւանդական իշխաննները չեն ունեցել կրօնական հանգամանք։ Մեծ տանուտէրերը կարող էին լինել իրանց ընտանիքի մէջ, իրանց տան օջախի, տան խորանի կրօնական պետը, ինչպէս բոլոր տանուտէրերը. (քաղդատել յոյն և հռոմէական* pater familias-*ների հետ), բայց ընդհանուր կրօնական հանգամանք ոչ մի դէպքում չէին կարող ունենալ։ Այդ պաշտօնը յանձնուած է եղել քուրմին, ընդհանուր կրօնքի պաշտօնէին։ Երկրորդ՝ մենք գտնում ենք ժամանակակից սովորութիւնների մէջ մի վերջամնացութիւն, որ շատ աւելի պարզ և աւելի ուղիղ գծով կապւում է անցեալի աւատական իշխանների հետ. այդ տանուտէրն է և նրա կատարած դերը գիւղերում ամուսնութեան առթիւ։ Երբ մէկը ցանկանում է մի ուրիշ գիւղից կամ հէնց իր գիւղից աղջիկ առնել, պէտք է գնայ տանտիրոջ մօտ, վճարէ նրան որոշ գումար, ըստանայ նրա հաւանութիւնը եւ ի նշան այդ հաւանութեան, պսակող քահանային ներկայացնէ տանուտիրոջ համրիչը. իսկ առանց այդ նշանին քահանան մերժում է կատարել պսակը։ Աւանդական կարգերի ծանօթ եղողների համար շատ պարզ է նմանութեան կապը։ Հետևաբար երբ մենք գտնում ենք աւատական կամ նման կարգերի ներկայացուցիչը, յանձին տանուտէրի, չենք կարող համաձայնուել որ Թաւորն էլ նոյնի վերջամնացութիւնը լինի։*

*Ահա այս երկու պատճառներով մենք համաձայն չենք պարոն Սամուէլեանի եզրակացութեան։*

*Ամփոփենք մեր ասածները.*

*Նկատելով որ Թաւորը,*

*1. Կրում է մի տեսակ ժառանգական բնոյթ.*

*2. Կատարում է ամենակարևոր միսթիք դեր ամուսնութեան ընթացքում.*

*3. Լցնում է այն պարապը, որ հեթանոսական ամուսնութեան վերակազմութեան առթիւ առաջ է գալիս քուրմի բացակայութիւնից.*

*Մենք նրան համարում ենք երբեմնի քուրմի վերջամնացութիւնը։*

*Եւ նկատելով նաև,*

*1. Որ նա այնքան սերտ կապուած է որդեծնութեան և ընտանիքի յարատևութեան պահպանման հարցերի հետ.*

*2. Որ նկատելի են սեռական առնչութեան հետքեր Թաւորի և Սանամօր միջև, ներկայումս գոյութիւն ունեցող սովորութիւնների մէջ իսկ՝*

3. Որ հեթանոս հայերի մէջ գոյութիւն է ունեցել շատ սերտ միութիւն սեռական և կրօնական հարցերում:

Մենք եզրակացնում ենք որ հայ քուրմը, սեռական ծէսերով կապուած է եղել նորապսակ աղջկայ հետ. ծէսեր՝ որոնք ներկայացրել են թէ միսթիք և թէ գործնական կարիք և օգտակարութիւն:

---

Այս աշխատութեան մէջ յիշած սովորութիւնների համար դիմել

Ազգ. Հանդէսի

Ուսումնասիրած Ե. Լալայեանի կողմից:

Ջանգեզուրի . . . . գիրք Դ.
Վասպուրականի . . . . » Ի.
Սիսիանի . . . . » Գ.
Գանձակի . . . . » Զ.
Վարանդայի . . . . » Բ.
Վայոց Ձորի . . . . » ԺԳ.
Գողթանի . . . . » ԺԲ.
Նոր Բայազէտի . . . . » ԺԶ.
Բուլանըխի . . . . » Ե.

Բացի այս սովորութիւններից նկատի ենք ունեցել նաև Ակնայ սովորութիւնները, ինչպէս նաև Սվազի, Խարբերդի, Եօզղատի, Պրուսիայի, Կարնոյ ամուսնական սովորութիւնները:

Դիմել նաև,

Պ. Ղըլըտչեանի, Հայ Հին Իրաւունքը:
Պ. Մեղաւորեանի, La famille Armenienne.
Պ. Սամուէլեանի, յօդուածները գլխաւորաբար՝
Հայ ընտանեկան պաշտամունքը, գիրք XII Ազգ. Հան.
Մայրական իրաւունք, XVII և XVIII.

